Մովսիսյան, Արտակ (2005) Նախամաշտոցյան Հայաստանի գրավոր ժառանգությունը. Պատմա-բանասիրական հանդես, № 2 . pp. 87-100. ISSN 0135-0536

# ՆԱԽԱՄԱՇՏՈՑՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՐԱՎՈՐ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ

ԱՐՏԱԿ ՄՈՎՍԻՍՅԱՆ

Ակադեմիկոս ԳԵՎՈՐԳ ՋԱՀՈՒԿՅԱՆԻ
լուսավոր հիշատակին

*Գրավոր մշակույթի զարգացումը դարեր ու հազարամյակներ տևող գործընթաց է, որում այն կրող ժողովրդի մոտ ձևավորվում, արմատավորվում և զարգանում է գրային մտածողություն: Մաշտոցյան գրերով սկզբնավորված ոսկեդարյան գրականությունը, անառարկելիորեն, բարձր զարգացման հասած գրային մտածողության արգասիք է, ինչից կարելի է ենթադրել նախամաշտոցյան Հայաստանում գրավոր մշակույթի զարգացման բազմադարյան ընթացք: Որպեսզի այս միտքը չհնչի որպես զուտ տեսական եզրահանգում, փորձենք դիտարկել, թե ինչ գրեր են կիրառվել, գրավոր մշակույթը ինչպիսի զարգացում է ապրել նախամաշտոցյան Հայաստանում:*

*Նախամաշտոցյան Հայաստանի դպրության մասին հնագիտական պեղումների և պահպանված մատենագրական բազմաթիվ հաղորդումների շնորհիվ այսօր ունենք հսկայական փաստական նյութ: Ք. ա. V-III հազարամյակներում Հայկական լեռնաշխարհում ձևավորվում է պատկերագրությունը, որն իր արտահայտությունն է գտնում ինչպես ժայռապատկերների, այնպես էլ զանազան իրերի վրա[1]: Ք. ա. III հազարամյակում պատկերագրերի զարգացմամբ և պարզեցմամբ ստեղծվում է գծային գրերի մի համակարգ (բաղկացած 400–500 նշաններից), որը կիրառվում է մինչև Ք. ա. I հազ. սկիզբը: Այս համակարգով կատարված շուրջ 300 արձանագրություններ են գտնվել Հայաստանի տասից ավելի հնավայրերից: Դրանք դեռևս վերծանված չեն. անհասկանալի է մնում գրության ուղղությունը[2]:*

*Ք. ա. XV-VIII դդ. Հայկական լեռնաշխարհի արևմուտքում՝ Եփրատի հովտում, կիրառվում են խեթալուվիական հիերոգլիֆները՝ գրված լուվիե-*

---

[1] *Հայկական լեռնաշխարհի պատկերագրության զարգացման նախնական փուլերի մասին տե՛ս Ա. Մ ո վ ս ի ս յ ա ն, Հայկական մեհենագրություն, Երևան, 2003, էջ 14-19: Վաղ բրոնզի դարաշրջանում Հայկական լեռնաշխարհում պատկերագրության օրինակները տե՛ս Հ. Մ ա ր տ ի ր ո ս յ ա ն, Հայաստանի նախնադարյան նշանագրերը և նրանց ուրարտա-հայկական կրկնակները, Երևան, 1973, էջ 68-70, աղ.* XXIII, Т. Ч у б и н и ш в и л и, К древней истории Южного Кавказа, Тбилиси, 1971, табл. XXVII, A. G. S a g o n a, The Caucasian Region in the Early Bronze Age, Part III, Oxford, 1984, *նկ. 115-124,* C. M a r r o, La culture du Haut-Euphrate au Bronze ancien. Essai d'interpretation a partir de la ceramique peinte de Keban (Turquie), "Varia Anatolica", VIII, Paris, 1997, pl. 86–92, P. de M i r o s c h e d j i, La ceramique de Khirbet Kerak en Syro-Palestine: Etat de la question, "Varia Anatolica", XI (Chronologies des pays du Caucase et de l'Euphrate aux IV$^{e}$-III$^{e}$ millenaires), Paris, 2000, p. 275, im. 4 *և այլն:*

[2] *Ա. Մ ո վ ս ի ս յ ա ն, նշվ.աշխ, էջ 30-46:*

րենով[3] (հայերենին մոտ ազգակից հնդեվրոպական մի լեզվով. ժամանակին ենթադրվում էր, որ դա հայերենն է[4]): Գրային համակարգը բաղկացած է եղել շուրջ 500 հիերոգլիֆներից, ունեցել դրության բուստրոֆեդոն (ամեն հաջորդ տողը նախորդին հակառակ) ուղղություն, կիրառվել է Փոքր Ասիայի, Սիրիայի և Հայկական լեռնաշխարհի արևմտյան տարածքներում[5]: Վանի թագավորությունում (Բիայնիլի, Ուրարտու, Արարատ) գործածվել են երեք գրային համակարգեր, որոնցից մեկը բնիկ տեղական մեհենագրությունն է, մյուս երկուսը սեպագիր են ներմուծված Միջագետքից[6]: Տեղական (վանյան / բիայնական / ուրարտական) մեհենագրությունը բաղկացած է շուրջ 300 մեհենանշաններից (հիերոգլիֆներից), որոնք գրվել են աջից ձախ և վերից վար ուղղություններով: Այս համակարգը Հայկական լեռնաշխարհի սահմաններից դուրս որևէ տեղ հայտնի չէ: Մինչ օրս հայտնաբերվել են շուրջ 1500 արձանագրություններ և մենանշաններ[7]:

---

[3] Դրանք հայտնաբերվել են Ծովքի հնավայրերից (H. G. Guterbock, Hittite Hieroglyphic Seal Impressions from Korucutepe – "Journal of Near Eastern Studies", vol. 32, 1973, N 1-2 (January-April), p. 135-147, աղ. 3-5), Մելիդ-Թեգարամայի տարածքից (տե՛ս H. T. Bossert, Altanatolien, Berlin, 1942, S. 67-70, 181-190, նկ. 763-795, P. Meriggi, Manuale di eteo geroglifico, II, Roma, 1975, NN 97-119, J. D. Hawkins, Corpus of Hieroglyphic Luwian Inscriptions, vol. 1, Inscriptions of the Iron Age, Berlin-New York, 2000, p. 282-329, աղ. 133-164), Կումմուխ-Կոմմագենեից (P. Meriggi, նշվ. աշխ, NN 124-131, J. D. Hawkins, նշվ. աշխ, էջ 334-360): Տե՛ս նաև Ա. Ե. Մովսիսյան, Նախամաշտոցյան Հայաստանի գրային համակարգերը, Երևան, 2003, էջ 50-61, 282-321:

[4] Տե՛ս H. Jensen, Hittiter und Armenier, Strassburg, 1898 աշխատությունը, որում ի մի են բերված այդ ժամանակ հայտնի ընդամենը 92 հիերոգլիֆներ: Թեպետ հետագայում հարցը ստացավ այլ լուծում, կարծում ենք ավելորդ չի լինի մեկ անգամ ևս ականավոր գիտնականի տեսակետին անդրադառնալը:

[5] Գրային համակարգի և դրա ուսումնասիրության պատմությունը համապատասխան գրականության հղումներով՝ տե՛ս H. Jensen, Die Schrift in Vergangenheit und Gegenwart, Berlin, 1958, S. 133-141, E. Laroche, Les Hierogliphes Hittites, Paris, 1960, D. Diringer, Writing, London, 1962, p. 66-69, Д. Дирингер. Алфавит. М., 1963, с. 118-123; И. М. Дунаевская. Язык хеттских иероглифов. М., 1969, И. Фридрих. История письма. М., 1979, с. 83-85, И. Е. Гельб. Опыт изучения письма. М., 1982, с. 86-88, А. В. Косян. Лувийские царства Малой Азии и прилегающих областей. Ереван, 1994, с. 6-7, 106-107, H. C. Melchert. Anatolian Hieroglyphs – In: "The World's Writing Systems" (ed. by P. T. Daniels and W. Bright), New York-Oxford, 1996, p. 120-124 և այլն:

[6] Սեպագրության ծագման ու զարգացման վերաբերյալ կա հսկայածավալ գրականություն. համաշխարհային նշանակության այդ երևույթին անդրադարձել են և՛ գրերի մասին ընդհանրացնող աշխատություններում, և՛ նվիրվել են հատուկ ուսումնասիրություններ. տե՛ս, օրինակ, G. A. Barton, The Origin and Development of Babylonian Writing.– "Beitrage zur Assyriologie", Bd. IX, 1913, Ջ. Լոուկոտկա, Գրի զարգացումը, Երևան, 1955, էջ 38-57, E. Chiera, They wrote on clay, Chicago, 1957, H. Jensen, նշվ. աշխ., էջ 74-88, I. J. Gelb, Von der Keilschrift zum Alphabet, Stuttgart, 1958, D. Diringer, նշվ. աշխ., էջ 35-46, Д. Дирингер, նշվ. աշխ., էջ 59-77, В. А. Истрин. Возникновение и развитие письма, М., 1965, с. 187-198, R. Labat, Manuel d'epigraphie akkadienne, Paris, 1976, И. Фридрих, նշվ. աշխ., էջ 83-85, А. Оппенхейм. Древняя Месопотамия. М., 1990, с. 181-228, P. Michalowski, Mesopotamian Cuneiform – In: "The World's Writing Systems" (ed. by P. T. Daniels and W. Bright), New York-Oxford, 1996, p. 33-72 և գրանցում վկայակոչված գրականությունը:

[7] Մանրամասն տե՛ս Ա. Ե. Մովսիսյան, Հայկական մեհենագրություն, էջ 46-126, գրականության հղումները՝ էջ 49-63, ավելի քան 40 հնավայրերի քարտեզը՝ էջ 50, արձանագրությունների և մենանշանների դիվանը՝ էջ 189-269 (Հավելված Բ):

*Վանի թագավորությունում լայն կիրառություն են ունեցել սեպագիր համակարգերը: Սարդուրի I արքայի օրոք (Ք. ա. մոտ 840–825 թթ.) կանգնեցվել են ասորեստանյան սեպագրով (շուրջ 600 նշան՝ ձախից աջ գրությամբ) և ասուրերենով գրված արձանագրություններ: Այդ արքայից հետո ասուրերենով բնագրերը հանդիպում են Բիայնիլի-Ուրարտուի արքաների երկլեզու կոթողներում, ինչպես նաև Արգինի-Մուսասիրում[8]: Ուշադրության է արժանի այն հանգամանքը, որ բիայնական տիրակալների թողած ասուրերեն արձանագրություններում կիրառված են որոշակի թվով նշաններ, որոնք չեն հանդիպում տեղական (բիայնական) սեպագիր հուշարձաններում[9]:*

*Իշպուինի արքայի օրոք (Ք. ա. մոտ 825–810 թթ.) միջագետքյան սեպագրության բարեփոխմամբ ստեղծվեց տեղական (բիայնական կամ ուրարտական) սեպագրային համակարգը (ձախից աջ գրությամբ), որով մեզ են հասել շուրջ 600 մեծ ու փոքր արձանագրություններ[10]: Իշպուինիի օ-*

---

[8] C. F. L e h m a n n - H a u p t, Materialien zur alteren Geschihte Armeniens und Mesopotamiens, Abhandlungen der Koniglichen Gesellschaft der Wissenschaften zu Gottingen, Philologisch-historische Klasse, Neue Folge, Band IX, N 3, Berlin, 1907, *S. 63,* F. T h u r e a u - D a n g i n, Une relation de la huitieme campagne de Sargon (714 av. J.-C.), Paris, 1912, *p.* XII, И. М. Д ь я к о н о в. Ассиро-вавилонские источники по истории Урарту. – "Вестник древней истории" (далее – ВДИ), 1951, N 2-4, N 48, Г. А. М е л и к и ш в и л и. Урартские клинообразные надписи. М., 1960, с. 117-118, 125-131, 323-327, R. M. B o e h m e r, Zur Stelle von Topzava.– "Baghdader Mitteilungen", Bd. 10, 1979, *S. 50-51, աղ. 12, Հ. Հ. Կ ա ր ա գ յ ո զ յ ա ն, Ուրարտական աղբյուրները Հայկական լեռնաշխարհի և հարևան պետությունների մասին.– Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա, 1, Երևան, 1981, էջ 39-40,* M. S a l v i n i, Eine vergessene Felsinschrift mit einem assyrischen Opfertext, Societies and Languages of the Ancient Near East (Studies in honour of I. M. D i a k o n o f f), Warminster, 1982, *S. 327-332,* L. V a n d e n B e r g e, L. d e M e y e r, Urartu. Een vergeten cultur uit het bergland Armenie, Gent, 1982-1983, *p.* 223, I. M. D i a k o n o f f, On some new trends in Urartian philology and some new Urartian texts, AMI, Bd. 22, 1989, p. 93, B. A n d r é - S a l v i n i, M. S a l v i n i, The Urartian Rock Inscriptions of Razliq and Našteban (East Azerbaijan, Iran), SMEA, 1999, fasc. XLI / 1, p. 21, Н. В. А р у т ю н я н, Корпус урартских клинообразных надписей, Ереван, 2001, с. 9-12, 25-30, 137-139, 289-294, B. A n d r é - S a l v i n i, M. S.a l v i n i, The Bilingual Stele of Rusa I from Movana (West-Azerbaijan, Iran), SMEA, 2002, fasc. XLIV / 1, *p. 5-66 և այլն: Տե՛ս նաև Ա. Ե. Մ ո վ ս ի ս յ ա ն, Նախամաշտոցյան Հայաստանի գրային համակարգերը, էջ 62-69 (ասուրա-բաբելական սեպագրերի նշանացանկը՝ էջ 322-368)։*

[9] *Այդ նշանները (առանձնացված հատուկ պայմանանշանով) տե՛ս* Г. А. М е л и к и ш в и л и, *նշվ. աշխ., էջ 36-44:*

[10] *Վանի թագավորության սեպագիր արձանագրությունների ուսումնասիրության պատմությունը՝ գրականության հանգամանալի վկայակոչումներով, տե՛ս* Б. Б. П и о т р о в с к и й. Ванское царство (Урарту). М., 1959, с. *7-26, Գ. Բ. Ջ ա հ ո ւ կ յ ա ն, Հայոց լեզվի պատմություն. Նախագրային ժամանակաշրջան, Երևան, 1987, էջ 417-445,* М. Л. Х а ч и к я н. Хурритский и урартский языки. Ереван, 1985, с. 10-14, 135-137, M. S a l v i n i, Geschichte und Kultur der urartäer, Darmstadt, 1995, S. 5-14, *մատենագիտական ցանկը՝ S. 211-238, Հ. Հ. Կ ա ր ա գ յ ո զ յ ա ն, Սեպագիր տեղանուններ (Այրարատում և հարակից նահանգներում).– Հայկական լեռնաշխարհը սեպագիր աղբյուրներում, հատ. I, գիրք 1, Երևան, 1998, էջ 7-10 և այլն: Մինչ այժմ հրատարակված արձանագրությունների ժողովածուներն են՝* A. H. S a y c e, The cuneiform inscriptions of Van.– "Journal of the Royal Asiatic Society of Great Britain and Ireland", London, 1882, XIV, N 3-4 *(լրացումները լույս են տեսել.–* "Journal of the Royal Asiatic Society of Great Britain and Ireland" *հանդեսի էջերում 1888-1932 թվերի ընթացքում),* J. S a n d a l g i a n, Les inscriptions cuneiformes urartiques, Venise, 1900 *(լրացումները՝ «Հանդէս Ամսօրեայ»-ի 1913*

*րոք կատարվեց իր ընդգրկմամբ և որակով Հայաստանյան մինչմաշտոցյան իրականության մեծագույն գրային բարեփոխումը, որի էությունը հետևյալն է: Ասուրաբաբելոնյան սեպագրությունը բաղկացած էր շուրջ 600 նշանից, որոնցից յուրաքանչյուրն ուներ մի քանի, երբեմն 10-ից ավելի տարբեր ընթերցում: Ընդհանուր առմամբ, արտահայտվում էին շուրջ 3000 վանկ և բառ: Բիայնական սեպագրությունը վերցրեց շուրջ 200 նշան, որոնք հիմնականում ունեին մեկ ընթերցում և հազվադեպ էին հանդիպում երկու կամ երեք նշանակությամբ: Բիայնական կոթողային ոճի սեպանշանները կառուցվածքով գրեթե նույնանում են նոր ասուրական նշաններին, ինչի հիման վրա էլ ընդունված է կարծել, թե այդ ոճը փոխառվել է Միջագետքից նոր ասուրական ժամանակաշրջանում: Տարբերությունը, հիմնականում, նշանների արտաքին տեսքի մեջ է: Ասուրական սեպանշանները մեխեր էին հիշեցնում, մինչդեռ բիայնական կոթողայինում եռանկյունիներ էին, և եթե միջագետքյանում նշաններն ունեին հատումներ, ապա բիայնականում հատվող գծիկը փոխարինվում էր երկու նոր սեպերով: Որոշ դեպքերում թեք սեպիկները վերածվում են հորիզոնականի և ընդհակառակը: Մի քանի նշաններ հանդես են գալիս ասուրաբաբելոնյան սեպագրության մեջ չվկայված նշանակությամբ*[11]*:*

*Դեռևս անորոշ է մնում Ք. ա. VI դարից մինչև քրիստոնեության ընդունումն ընկած ժամանակամիջոցում մեր մեհենագրության ճակատագրի հարցը: Ըստ Հ. Մարտիրոսյանի «Այն չի բավարարում զարգացող երիտասարդ պետականության և համապատասխան դաղափարաբանության պահանջները: Այդ պատճառով հեթանոսական Հայաստանում լայնորեն օգտագործվում են օտարազգի հնչյունային դրեր... Գաղափարադրությունը շարունակում է հարատևել մասնավորապես մեհյաններում՝ իբրև կրոնական-հմայական դրչության ձև»*[12]*:*

*Նյութական վկայությունների բացակայության հետևանքով այսօր մեզ հայտնի չէ, թե հետբիայնական դարաշրջանում հայկական մեհենագրութ-*

---

*թ. համարներում)*, Corpus Inscriptionum Chaldicarum (In Verbindung mit F. B a g e l und F. S c h a c h e r m e y r herausgegeben von C. F. Lehmann-Haupt), I-II, Berlin und Leipzig, 1928-1935 *(որը Կ. Ֆ. Լեհման-Հաուպտի մահվան պատճառով մնաց անավարտ)*, F. W. K ö n i g, Handbuch der chaldischen Inschriften, I-II, Graz, 1955-1957, Г. А. М е л и к и ш в и л и, *նշվ. աշխ. (լրացումները՝* Г. А. М е л и к и ш в и л и. Урартские клинообразные надписи. — ВДИ, 1971, N 3-4), Н. В. А р у т ю н я н. *Նշվ. աշխ.:*

[11] *Գրային այս բարեփոխման մասին տե՛ս* Г. А. М е л и к и ш в и л и, *նշվ. աշխ., էջ 33-35, Հ ր. Ա ճ ա ռ յ ա ն, Հայոց դրերը, Երևան, 1984, էջ 399-402:*

[12] *Հ. Ա. Մ ա ր տ ի ր ո ս յ ա ն, Հայաստանի նախնադարյան նշանագրերը և նրանց ուրարտա-հայկական կրկնակները, Երևան, 1973, էջ 69: Դատելով մատենագրական տեղեկություններից, սակայն, կարելի է եզրակացնել, որ հայալեզու նշանագրերը նախաքրիստոնեական Հայաստանում ունեցել են ավելի լայն կիրառություն: Այդ են վկայում Փիլոստրատոսի տեղեկությունը Արշակ արքայի (I դար) նվիրաբերած հայագիր ոսկյա ժանյակի մասին (տե՛ս Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա, հ. 1, էջ 619-620), Հիպպոլիտոսի 234-235 թթ. գրված «Ժամանակագրության» մեջ հայերի նշվելը սեփական գպրություն ունեցող ժողովուրդների շարքում (նույն տեղում, էջ 621), Ագաթանգեղոսի հաղորդումները նշանագրության և նախաքրիստոնեական Հայաստանում դպրության ատոծո Տիրի պաշտամունքի վերաբերյալ (Ա գ ա թ ա ն գ ե ղ ո ս, 12, Ը, 99, ՃԸ, 778), Մովսես Խորենացու հաղորդումը II-III դարերում Դարանաղյաց Անի ամրոցում մեհենադրական պատմագրության արխիվի մասին, որից ասորի մատենագիր Բարդածանը (Բար Դայսանը) թարգմանություններ է կատարել ասորերեն ու հունարեն (Խ ո ր ե ն ա ց ի, Բ, ԿԶ) և այլն:*

*յունն ինչ զարգացում է ունեցել, հասե՞լ է այբուբենի, թե ոչ: Հավանական է ենթադրելը, որ այնուամենայնիվ չի հանգել այբուբենի, որի պատճառը կարող էր լինել քրմության կողմից սրբազան ավանդույթին հավատարիմ մնալը (ինչպես դա եղավ եգիպտական հիերոգլիֆիկայի պարագայում): Քրիստոնեության պետականացումից հետո մեհենագրերը շարունակեցին կիրառվել հայ իրականության մեջ հմայագրերի, վարպետների նշանների, գաղափարագիր-նշանագրերի («նշանագիրք իմաստնոց» ցանկերը միջնադարյան մատյաններում, իմաստակիր նշանները կիրառական արվեստում) և այլ տեսքով*[13]*:*

*Վանի թագավորության անկումից մինչև քրիստոնեության ընդունումը Հայաստանում գործածվում են այբբենական գրային համակարգերը (ի տարբերություն նախկինում գործածված բառային ու վանկային համակարգերի): Դրանցից առավել լայն տարածում գտավ հունարենը իր գրահամակարգով (ձախից աջ գրություն, 24 տառ)*[14]*, որը կիրառվում է Ք. ա. III դարից սկսած, իսկ քրիստոնեության պետական կրոն հռչակումից հետո ավելի լայնորեն գործածվում է, հատկապես, կրոնական քարոզչության նպատակով*[15]*:*

---

[13] *Մեհենանշանների քրիստոնեական դարաշրջանում ունեցած դրսևորումների մասին տե՛ս Ա. Մ ո վ ս ի ս յ ա ն, Հայկական մեհենագրություն, էջ 129-142:*

[14] *Հունական այբուբենի ծագման ու զարգացման մասին կա հսկայածավալ գրականություն. տե՛ս, օրինակ, Զ. Լ ո ո ւ կ ո տ կ ա, նշվ. աշխ., էջ 167-175,* H. J e n s e n, *նշվ. աշխ., էջ 422-442,* D. D i r i n g e r, *նշվ. աշխ., էջ* 149-164, Д. Д и р и н г е р, *նշվ. աշխ., էջ 522-536,* В. А. И с т р и н, *նշվ. աշխ., էջ 332-351,* И. Гельб, *նշվ. աշխ., էջ* 171-177, И. Ф р и д р и х, *նշվ. աշխ., էջ* 127-133 (*նաև դրանցում հղված գրականությունը*):

[15] *Նախամաշտոցյան Հայաստանի հունագիր հուշարձանների հրապարակումները տե՛ս* K. H u m a n n und O. P u s c h t e i n, Reisen in Kleinasien und Nordsyrien, Textband, Berlin, 1890, S. 232-352, P. G. J e r p h a n i o n, P. L. J a l a b e r t, Inscriptions d'Asie Mineure (Pont, Cappadoce, Cilice), "Mélanges de la Faculté Orientale de l'Université Saint-Joseph", III, Fasc. I, Beyrouth, 1908, p. 470 (N 59), C. F. L e h m a n n - H a u p t, Eine griechische Inschrift, "Klio", VIII, 1908, S. 497-520, C. F. L e h m a n n - H a u p t, Armenien Einst und Jetzt, I, Berlin und Leipzig, 1910, S. 410-421, М. И. Р о с т о в ц е в. Апаранская греческая надпись царя Тиридата. (Анийская серия, N 6), СПб., 1911, с. 1-32, L. J a l a b e r t, R. M o u t e r d e, Inscriptions grecques et latines de la Syrie, t. I, Commagene et Cyrrhestique, Paris, 1929, p. 9-60, Б. Л у н и н. Археологические находки 1935-1936 гг. в окрестностях станиц Тульской и Даховской близ Майкопа.— ВДИ, 1939, N 3, с. 220-223, А. И. Б о л т у н о в а. Греческие надписи Армавира.— ВОН, *1942, N 1-2, Հ. Մ ա ն ա ն դ յ ա ն, Արմավիրի հունարեն արձանագրությունները նոր լուսաբանությամբ, Երևան, 1946 (հայերեն և ռուսերեն),* К. В. Т р е в е р. Надпись о построении армянской крепости Гарни. Л., 1949, Г. И. Г о я н. 2000 лет армянского театра, т. I, Театр древней Армении. М., 1952, с. 377-388, К. В. Т р е в е р, Очерки по истории культуры древней Армении (II в. до н. э. — IV в. н. э.). М.—Л., 1953, с. *104-161, 174-211, 224-261, 271-288,* Г. Х. С а р к и с я н. Тигранакерт. М., 1960, с. *76-86, Գ. Խ. Ս ա ր գ ս յ ա ն, Նախամեսրոպյան շրջանի հայ պատմագրությունը.— ՊԲՀ, 1969, №1, էջ 112-113, Ա. Ա. Մ ա ր տ ի ր ո ս յ ա ն, Հայաստանը և առաջին Սասանյանները.— ՊԲՀ, 1975, N 3, էջ 192,* E. L i p i n s k i, Studies in aramaic inscriptions and onomastics, Leuven, 1975, p. 197-208, Б. Н. А р а к е л я н. Очерки по истории искусства Древней Армении (VI в. до н. э. - III в. н. э.). Ереван, 1976, с. *89-100, Հ. Մ ա ն ա ն դ յ ա ն, Երկեր, հ. Բ, Երևան, 1978, էջ 124-126, Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա, էջ 359-363 (թարգմանությունը Ս. Գ. Կրկյաշարյանի) և այլն:*

*Հայկական դրամների հունարեն մակագրությունները՝ ՀԺՊ (ակադ. հրատ.), հ. I, էջ 692-698 (բաժնի հեղինակ՝ Խ. Մ ո ւ շ ե ղ յ ա ն),* P. Z. B e d o u k i a n, Coinage of the

*Հին Առաջավոր Ասիայում առավել տարածված գրահամակարգերից մեկն արամեական այբուբենն է (22 բաղաձայն, աջից ձախ գրությամբ)[16], որը Ք. ա. II-ից Ք. հ. II դարերում կիրառվում էր նաև Հայկական լեռնաշխարհում[17]:*

---

Artaxiads of Armenia, London, 1978 *(հատկապես էջ 42-43-ում)*, *Խ. Մուշեղյան, Հայաստանի դրամական գանձերը, Երևան, 1973, էջ 78-81, Նույնի՝ Դրամական շրջանառությունը Հայաստանում (մ. թ. ա. V դ. – մ. թ. XIV դ.), Երևան, 1983, էջ 43-67,* P. Z. Bedoukian, Coinage of the Armenian Kingdoms of Sophene and Commagene, Los Angeles, 1985, *p. 15-18, 29-31, 36-37,* Y. T. Nercessian, Armenian Coins and their Values. Los Angeles, 1995, *p. 47-101, Նույնի՝* Armenian Numismatic Studies. Los Angeles, 2000, *p. 1-206 և այլն (նաև հղված աղբյուրները):*

*Նախամաշտոցյան Հայաստանում հունարենի կիրառության մասին՝ ամփոփ և գրականության հանգամանալի հղումներով՝ տե՛ս Ա. Մովսիսյան, Նախամաշտոցյան Հայաստանի գրային համակարգերը, էջ 111-163: Չորրորդ դարում Հայաստանում ստեղծված հունալեզու գրականության մասին տե՛ս Լ. Խաչիկյան, Օտարալեզու հայ դրականությունը չորրորդ դարում (Ներսես Պարթևի և Եպիփանի նորահայտ «Հարցման» առիթով), ՊԲՀ, 1973, N 3, էջ 27-51 (հղումներով հանդերձ):*

[16] *Արամեերենի, արամեական դրի և դրա տարածման մասին տե՛ս* S. Schiffer, Die Aramaer, Leipzig, 1911, A. Dupont-Sommer, Les arameens, Paris, 1949, R. T. O'Callaghan, Aram Naharaim, Roma, 1948, *p. 93-144, Ջ. Լոուկոտկա, նշվ. աշխ., էջ 114-130,* H. Jensen, *նշվ. աշխ., էջ 281-285,* D. Diringer, *նշվ. աշխ., էջ* 133-140, Д. Дирингер, *նշվ. աշխ., էջ 302-354,* И. Фридрих, *նշվ. աշխ., էջ 105-108,* E. Lipinski. The Arameans: Their ancient history, culture, religion, Leuven-Paris-Sterling, 2000 *և դրանցում հղված դրականությունը:*

[17] *Հայկական լեռնաշխարհի տարածքից հայտնաբերված արամեագիր հուշարձանների մասին տե՛ս Ց. Բեր. Լալայան, Դամբարանների պեղումներ Խորհրդային Հայաստանում, Ցերևան, 1931, էջ 97-98,* А. Я. Борисов, Надписи Артаксия (Арташеса), царя Армении. – ВДИ, 1946, N 2, с. 97-107, A. Dupont-Sommer, Les inscriptions arameennes trouvées prės du lac Sévan (Arménie), "Syria", XXV, N 1-2, 1946-1948, p. 53-66, К. В. Тревер. Очерки по истории культуры древней Армении (II в. до н. э. – IV в. н. э.). М.-Л., 1953, с. 162-174, И. М. Дьяконов, К. Б. Старкова. Надписи Артаксия (Арташеса), царя Армении. – ВДИ, 1955, N 2, с. 161-174, Г. А. Тирацян. Опыт периодизации истории материальной культуры древней Армении. – ВОН, 1957, N 2, с. 82, 105-109, Г. А. Тирацян, Новонайденная надпись Арташеса I, царя Армении. – ВДИ, 1959, N 1, с. 88-90, А. Г. Периханян. Арамейская надпись из Гарни. – ИФЖ, 1964, N 3, с. 123-137, А. Г. Периханян. Арамейская надпись из Зангезура. – ИФЖ, *1965*, N 4, с. 107-128, И. Н. Винников. Об одной арамейской печати в собраниях Государственного Эрмитажа в Ленинграде. Краткие сообщения Института народов Азии. 86, История и филология Ближнего Востока, Семитологоя, М., 1965, с. 18-19, рис. 1-2, A. Perikhanian, Une inscription araméenne du roi Artaches trouvée au Zanguézour (Siwnik).– "Revue des Etudes Arméniennes" *(այսուհետ՝* REA), 1966, vol. III, p. 17-29, А. Г. Периханян. Арамейская надпись на серебряной чаше из Сисиана. – ИФЖ, *1971*, N 3, с. 78-82, A. Périkhanian, Les inscriptions du roi Artaches (A propos d'une récente trouvaille épigraphique en Arménie).– REA, vol. VIII, 1971, p. 169-174, A. Perikhanian, Inscription araméenne gravée sur une coupe d'argent trouvée à Sisian (Arménie).– REA, vol. VIII, 1971, p. 5-11, pl. I-II, *Գ. Ղարախանյան, Արամեական նորահայտ երկու արձանագրություններ, ՊԲՀ, 1971, N 3, էջ 274-276,* E. Lipinski, Studies in aramaic inscriptions and onomastics, Leuven, 1975, p. 197-208, *Գ. Տիրացյան, Արտաշես I-ի ևս մեկ նորագյուտ արամեական արձանագրություն, ՊԲՀ, 1977, N 4, էջ 254-259,* Г. А. Тирацян. Еще одна арамейская надпись Арташеса I, царя Армении. – ВДИ, 1980, N 4, с. 99-104; Б. Н. Аракелян. Арташат I. Основные результаты раскопок 1970-1977 гг. Ереван, 1982, с. 33, табл. XLI, Г. А. Тирацян. Культура древней Армении VI в. до н. э. - III в. н. э. (по археологическим данным), Ереван, 1988, с. 66, табл. XVI-9, E. Khurshudian. A Coin of

*Քրիստոնեության պետական կրոն հռչակումից հետո, հունարենին զուգահեռ, քարոզչական նպատակներով Հայաստանում լայն կիրառություն է ստանում ասորերենը[18]: Արքունի գրագրության, հոգևոր քարոզչության և ուսման ասպարեզներում Տրդատ III-ի հրամանով սահմանած հունարենի ու ասորերենի գործածության կարգը խախտվել է Խոսրով արքայի գահընկեցությունից (389 թ.) հետո, երբ Արևելյան Հայաստանում արքունի գրագրության մեջ գործածվում է պահլավերենը (միջին պարսկերենը)[19]: Թե՛ ասորական և թե՛ պահլավական գրերի հիմքում ընկած է արամեական այբուբենը[20]:*

*Հիշատակված հայտնի և հստակ թվագրվող գրահամակարգերից բացի նախամաշտոցյան Հայաստանն ուներ ևս երկու գրահամակարգեր, որոնք շարունակում են մնալ չվերծանված և իրենց ծագումով ու նշանակությամբ առեղծվածային: Դրանցից մեկը Հայաստանի երկրորդ սեպագիրն է, որը տարբերվում է մինչ օրս աշխարհում հայտնի բոլոր սեպանշանային համակարգերից[21], իսկ երկրորդն առեղծվածային հսկայանշաններն են[22]:*

---

Mitridat, King of Tosp, Oriental Numismatic Society, Newsletter, No. 157, Autumn 1998, p. 8, Э. Хуршудян. Монета Митридата царя Тоспа. — *«Մերձավոր և Միջին Արևելքի երկրներ և ժողովուրդներ», հ. XVII, Երևան, 1998, էջ 167-174, Ռ. Բիշիոնե, Հ. Հակոբյան, Ս. Հմայակյան, Ն. Պարմեջիանի, Արտաշես արքայի նորահայտ սահմանաքարը Սարուխանից, Հին Հայաստանի պատմության և մշակույթի հարցեր. Գևորգ Տիրացյանի հիշատակին նվիրված գիտաժողովի զեկուցումներ, Երևան, 2001, էջ 79-82, Ժ. Խաչատրյան, Ի. Կարապետյան, Ռ. Վարդանյան, Ի. Կանեցյան, Արտաշատի 1998-1999 թթ. պեղումների արդյունքները, Հին Հայաստանի մշակույթը, XII, Հանրապետական գիտական նստաշրջան, Զեկուցումների հիմնադրույթներ (նվիրվում է ակադ. Բաբկեն Առաքելյանի ծննդյան 90-ամյակին), Երևան, 2002, էջ 51-54, Ն. Հազեյան, Հ. Հակոբյան, Ս. Հմայակյան, Երկու նոր Արտաշեսյան սահմանաքար Վարդենիկից, Հայաստանի հնագույն մշակույթը, 2, Էմմա Խանզադյանի հոբելյանին նվիրված գիտաժողովի նյութեր, Երևան, 2002, էջ 76-77, Ս. Գ. Հմայակյան, Արտաշեսյան սահմանաքարերի շուրջ, Հայաստանի հնագույն մշակույթը, 2, Էմմա Խանզադյանի հոբելյանին նվիրված գիտաժողովի նյութեր, էջ 72-76, Ա. Մովսիսյան, Նախամաշտոցյան Հայաստանի գրային համակարգերը, էջ 89-108 և այլն (դրականության հղումներով):*

*Թեպետ Հայաստանից հայտնաբերված արամեատառ արձանագրությունների մեծ մասը համարվում է վերծանված և դրանց հիմամբ արվել են կարևոր եզրակացություններ, այդուհանդերձ, մեր կարծիքով, դրանց ընթերցման շատ հարցեր չի կարելի համարել վերջնականապես պարզված:*

18 *Հայաստանում ասորերենի և ասորական գրի գործածության մասին տե՛ս Ա. Մովսիսյան, նշվ. աշխ., էջ 164-167 (և հղված գրականությունը): Չորրորդ դարում Հայաստանում ստեղծված ասորալեզու գրականության մասին տե՛ս Լ. Խաչիկյան, նշվ. աշխ, էջ 27-51:*

19 *Դա ակնհայտ է Մովսես Խորենացու և Ղազար Փարպեցու հաղորդումներից: Ըստ Պատմահոր, Մերուժան Արծրունին 360-ական թթ. անհաջող փորձ է արել արգելելու հունարեն գրությունը և հաստատելու պարսկերենը (գիրք Գ, գլ. ԼԶ): Նույն պատմիչի համաձայն պարսկերենը Արևելյան Հայաստանի արքունի գրագրության մեջ գործածվել է Վռամշապուհի օրոք (գիրք Գ, գլ. ԾԲ): Ղազար Փարպեցին տեղեկացնում է, որ Հայաստանի բաժանումից անմիջապես հետո, Խոսրով արքայի օրոք դեռևս արքունիքում կիրառվում էր հունարենը (դրվագ Ա, գլ. Ժ): Դրանից պետք է եզրակացնել, որ միջին պարսկերենի (պահլավերենի) կիրառությունը Արևելյան Հայաստանում արքունի գրագրության մեջ սկսվել է 389 թվականից հետո:*

20 *Հայաստանում պահլավերենի (միջին պարսկերենի) և պահլավական գրի գործածության մասին տե՛ս Ա. Մովսիսյան, նշվ. աշխ., էջ 168-169: Տարօրինակ և հատկանշական է այն հանգամանքը, որ մինչ օրս Հայաստանից չի հայտնաբերվել նախամաշտոցյան շրջանի պահլավագիր կամ ասորագիր որևէ սալարկա (Նույն տեղում, էջ 164-169):*

21 *Գրահամակարգի մասին տե՛ս Ա. Մովսիսյան, Նոր սեպագիր այբուբե՞ն (Կարմիր բերդի առեղծվածային սեպագիր արձանագրության շուրջ).— ՊԲՀ, 2001, N 3, էջ 221-226, նույնի՝ Նախամաշտոցյան Հայաստանի գրային համակարգերը, էջ 200-208:*

22 C. F. Lehmann-Haupt, Armenien Einst und Jetzt, II a, Berlin und Leipzig, 1926, S. 105, *Ցեր. Լալայան, նշվ. աշխ., էջ 203, Թ. Թորամանյան, Նյութեր հայկական*

Վկայակոչված գրային համակարգերի կիրառմամբ Նախամաշտոցյան Հայաստանում ձևավորված գրավոր մշակույթի ու գրային մտածողության արտահայտություններ կարելի է տեսնել ոսկեդարյան դպրության բազմաթիվ տարրերում: Դրանցից առավել ակնառուն հինգերորդ դարում գրական հայերենի մշակվածության բարձր մակարդակն է[23]: Ինքնին հասկանալի է, որ դարեր ու հազարամյակներ տևած պետականության ընթացքում Հայաստանում գոյություն է ունեցել վերբարբառային, պետական հաղորդակցության լեզու, որը պիտի հասկանալի լիներ ողջ երկրում (դրանով պետք է հաղորդակցվեին արքունիքի հետ, զորահավաքների ընթացքում, դատական ատյաններում, աշխարհիկ ու հոգևոր դասերի ժողովներում և այլուր): Անհավանական է ենթադրելը, թե այդ համընդհանուր հաղորդակցության լեզուն (որը պետք է լիներ երկրի կենտրոնական շրջանի բարբառ-խոսվածքը) գոյություն է ունեցել ու զարգացել միայն խոսակցական մակարդակում՝ առանց գրավոր լեզու լինելու, և անմիջապես դարձել գրաբարի հիմքը: Ինչպես նշում է Գ. Բ. Ջահուկյանը՝ «գրական լեզվի բառապաշարը, ինչքան էլ աղքատ լինի, մի քանի, երբեմն մի քանի տասնյակ անգամ գերազանցում է յուրաքանչյուր բարբառի բառապաշար: Բարբառի միջին բառապաշարը սովորաբար հաշվում են 7-8 հազար. գրաբարի մեջ ավանդված բառապաշարը, այն էլ ոչ լիովին հայտնի, անցնում է 60 հազարից»[24]: Այսինքն՝ գրաբարի բառապաշարը ևս վկայում է հօգուտ հայերենի՝ Նախամաշտոցյան շրջանում երկարատև գրավոր մշակման ենթարկված լինելու իրողությունը:

Նախամաշտոցյան Հայաստանի գրավոր ժառանգությունը կարելի է խմբավորել ըստ մի քանի բնութագրական հատկանիշների:

---

Ճարտարապետության պատմության (Աշխատությունների ժողովածու), Երևան, MCMXLII (=1942), էջ 18-19, O. B e l l i, Monumentale Felszeichen im Bereicht urartaischer Festungsanlagen – "Anadolu Araştirmalari", 1989, XI, S. 89-105, աղ. I-XVI, N. B a ş g e l e n, Atabindi kaya işaretleri.– "Arkeoloji ve Sanat", 46-49, 1990, p. 24-26, նկ. 1-12, O. B e l l i, Surveys of Monumental Urartian Rock Signs in East Anatolia.– In: "Istanbul University's Contributions to Archaeology in Turkey (1932-2000)" (edited by O. B e l l i), Istanbul, 2001, p. 365-369, V. S e v i n, Urartular'a ait dünyanin en eski Karayolu, "Anadolu Araştirmalari", 1989, XI, p. 50-51, աղ. IV-2, V-1, Ա. Մ ո վ ս ի ս յ ա ն, Նախամաշտոցյան Հայաստանի գրային համակարգերը, էջ 208-211, Ն ո ւ յ ն ի՝ Հայկական մեհենագրություն, էջ 144-147:

[23] Նախամաշտոցյան Հայաստանում հայալեզու դպրության գոյությունն ընդունող և չընդունող գիտնականների առավել ամբողջական ցանկը հայտնած տեսակետներով, տե՛ս Կ. Թ ո խ ա թ ե ա ն, Մաշտոցեան տառաձեւերի եւ դրանց ժայռապատկեր նմանակների աղերսների շուրջ.– «Բազմավէպ», 2003, N 1-4, էջ 51-80: Այդ տեսակետների շարքում ուշագրավ մի վարկած առաջ քաշեց Գ. Խ Սարգսյանը, որը մինչ այդ էլ ընդունում էր նախաքրիստոնեական Հայաստանում հայալեզու դպրության հնարավորությունը, անգամ շուրջ 500-ամյա պատմագրական անընդհատ ավանդույթի գոյությունը (տե՛ս Գ. Խ. Ս ա ր գ ս յ ա ն, նշվ. աշխ., էջ 122-126): Նա կարծում է, որ չորրորդ դարում ևս հայալեզու գպրությունը չի ընդհատվել, այլ արտահայտվել է հետերիոգրաֆիայի եղանակով. վերջինիս համաձայն՝ օտարներից փոխառված դիրը կիրառվում էր բառերի նույն գծագրությամբ, սակայն կիրառողներն այն ընթերցում էին ոչ թե տվյալ գիրը ստեղծող ժողովրդի լեզվով, այլ իրենց լեզվի նույնիմաստ բառով (տե՛ս Г. Х. С а р к и с я н, К предыстории армянской письменности (նույնը՝ նաև ֆրանսերեն).– «Հայ արվեստին նվիրված միջազգային II սիմպոզիում», Երևան, 1978, էջ 1-10): Ուշագրավ այս վարկածը, սակայն, ցայսօր չի հաստատվել չորրորդ դարով թվագրվող հնագիտական որևէ փաստով:

[24] Գ. Բ. Ջ ա հ ո ւ կ յ ա ն, Զրույցներ հայոց լեզվի մասին, Երևան, 1992, էջ 77-78:

Ըստ ծագման և պատկանելության՝

1. Հայաստանում ստեղծված պատկերագրային համակարգերի հուշարձաններ,

2. օտար ծագում ունեցող, բայց Հայաստանի բնիկների կողմից կիրառված գրային համակարգերի արձանագրություններ (հատուկ ուշադրության են արժանի դրանց կիրառման տեղական առանձնահատկությունները),

3. Հայաստանի տարածքում հայտնաբերված, սակայն օտարների կողմից ստեղծված գրակիր հուշարձաններ[25],

4. առեղծվածային ծագումով և նշանակությամբ կոթողներ:

Ըստ գրային համակարգի բնույթի՝

1. բառային,
2. բառավանկային,
3. այբբենական:

Ըստ գրանշանների արտաքին տեսքի՝

1. պատկերանշանային (այդ թվում՝ հիերոգլիֆ),
2. գծանշանային,
3. սեպանշանային,
4. տառային:

Ըստ արձանագրությունների բովանդակության՝

1. արքայական արձանագրություններ՝ նվիրված աստվածների պաշտամունքին,

2. ռազմական արշավանքների նկարագրություններ,

3. թագավորական նախնիներին ձոնված գրակիր կոթողներ,

4. թագավորական իշխանության և արքայի անձի աստվածացմանը վերաբերող արձանագրություններ,

5. արքայական հիշատակարաններ քաղաքների ու շինությունների (հատկապես՝ սրբավայրերի) հիմնադրման ու բարեկարգման մասին,

6. նոր օրենքներ ու կարգեր սահմանող բնագրեր,

7. արքայական նվիրատվական արձանագրություններ,

8. թագավորական դրամների մակագրություններ,

9. արքայական նամակագրության արձանագրումներ,

10. հոգևոր-պաշտամունքային բազմաբնույթ բնագրեր,

11. ժամանակագրական-օրացուցային արձանագրություններ,

12. ընծայագրեր,

13. բարոյախրատական բովանդակությամբ չափածո ստեղծագործության (ողբերգությա՞ն) հատվածներ,

14. պատմական բովանդակությամբ չափածո ստեղծագործության (ողբերգությա՞ն) հատվածներ,

15. տապանագրեր (այդ թվում՝ չափածո եղերերգեր),

16. մենանշաններ,

17. դեռևս անհայտ բովանդակությամբ հուշարձաններ[26]...

---

[25] Հայկական լեռնաշխարհի տարբեր հնավայրերից գտնվել են բազմաթիվ գրակիր առարկաներ, որոնք այստեղ են հայտնվել ռազմական, առևտրատնտեսական, մշակութային ու այլաբնույթ հարաբերությունների արդյունքում և չեն կազմում հայաստանյան դպրության մասը:

[26] Այս դասակարգումը ստացել ենք այսօր վերծանված արձանագրությունների հավաքման արդյունքում: Մյուս արձանագրությունների ապագայում կատարվելիք վերծանությունը կարող է որոշակի փոփոխություններ մտցնել այս ցանկում:



Նկ. 1. Հայոց դպրության Տիր աստծո արձանը Կոմմագենեի Նեմրութ լեռան սրբավայրում

Նշանների համադրական ցանկ

Նկ. 3. Հայաստանի գծային գրանշանների համեմատական ցանկ



Նկ. 4. Բրոնզե պաշտամունքային թիթեղ՝ Վանի թագավորության մեհենագիր արձանագրությամբ: Պատկերված են արքա Իշպուինին, թագուհին, արքայազն Մենուան և նրա դաստիարակ-քուրմը, բոլորի գլխավերևում նշված են նրանց անունները (Ք. ա. IX դ.)

Նկ. 2. Վաղբրոնզեդարյան գաղափարագրեր Եփրատի վերին ավազանից (Ք. ա. 4-3-րդ հազ.)

Նկ. 5. Վանի թագավորության վերծանված մեհենագրերի ցանկ



Նկ. 6. Խեթալուվիական մեհենագիր արձանագրությամբ պատկերաքանդակ Մալաթիայից (Ք. ա. XII-XI դդ.)



Նկ. 7. Իշպուինի արքայի և Մենուա արքայազնի ասուրաբիայնական երկլեզու կոթողը Քելիշինում (Ք. ա. IX դ.)



Նկ. 8. Սեպագիր արձանագրություն Այանիս հնավայրից (Վանից արևելք, Ք. ա. VII դ.)



Նկ. 9. Հունարեն արձանագրությունների հատվածներ Արմավիրից (ենթադրվում է, որ դրանք կարող են լինել հատվածներ Արտավազդ Բ-ի ողբերգություններից)



Նկ. 10. Հունարեն չափածո եղերերգ-տապանագիր Մալաթիայից (II դ.)

Նկ. 11. Սահմանաքար համարվող արամեատառ քարակոթողներ



Նկ. 12. Նմուշներ առեղծվածային իսկայանշաններից

*Նախամաշտոցյան Հայաստանի գրավոր մշակույթի հուշարձանները կարելի է խմբավորել նաև ըստ գրանյութի, գրության ուղղության և այլ հատկանիշների:*

*Ավարտելուց առաջ անհրաժեշտ ենք համարում մեկ անգամ ևս շեշտել, որ հազարամյակների ընթացքում Հայկական լեռնաշխարհում ստեղծված գրավոր մշակույթը չէր կարող անհետևանք կորչել, և մաշտոցյան գյուտի կատարելությունը պայմանավորված էր նաև նախամաշտոցյան շրջանում արմատավորված գրային մտածողությամբ:*

*Ամփոփելով շարադրված ողջ նյութը՝ տեսնում ենք, որ նախամաշտոցյան Հայաստանում կիրառվել են տասներկու գրային համակարգեր, թողնվել են բազմահազար արձանագրություններ մայրենի և օտար լեզուներով: Դա ավելի քան խոսուն վկայությունն է մեր նախնիների՝ գրի ու գրականության նկատմամբ տածած հարգանքի և սիրո, որի պերճախոս ապացույցն է դպրության Տիր աստծո պաշտամունքը նախաքրիստոնեական դարաշրջանում: Այդ վերաբերմունքը շարունակվեց նաև հետագայում Մեսրոպ Մաշտոցի ու նրա հանճարեղ ժառանգների սրբացմամբ, ինչի ականատեսն ու վկան ենք այսօր...*

## ПИСЬМЕННОЕ НАСЛЕДИЕ ДОМАШТОЦЕВСКОЙ АРМЕНИИ

*АРТАК МОВСИСЯН*

Резюме

Письменное наследие домаштоцевской Армении можно разделить на четыре больших группы:

а) Письменные системы, созданные и используемые в Армянском нагорье:

- Пиктографическое письмо (V – III тыс. до Хр.),
- Линейное письмо (III – I тыс. до Хр.),
- Иероглифическое письмо Ванского царства (Биайнили, Урарту, Арарат, IX – VI вв. до Хр.).

б) Заимствованные письменные системы, используемые в Армянском нагорье:

- Хетто-лувийское иероглифическое письмо (XV – VIII вв. до Хр.),
- Ассиро-вавилонское клинообразное письмо (IX – VIII вв. до Хр.),
- Клинообразное письмо Ванского царства (Биайнили, Урарту, Арарат, IX-VI вв. до Хр.),
- Греческие надписи домаштоцевской Армении (III в. до Хр. — V в.),
- Надписи домаштоцевской Армении арамейским письмом (II в. до Хр. — II в.),
- Сирийский алфавит (IV — V вв.),
- Среднеперсидский алфавит (пехлеви, IV — V вв.).

в) Надписи, оказавшиеся в Армении в результате сношений с иностранцами.

г) Загадочные надписи неизвестного происхождения (используемые только в Армянском нагорье).

- Вторая клинообразная система Армении.
- Загадочные монументальные наскальные знаки.

Всего, в течение трех тысячелетий в домаштоцевской Армении использованы 5 местных и 7 заимствованных систем письма. Результаты их исследования проливают свет на многие вопросы древней истории и культуры Армянского нагорья.

## THE WRITING HERITAGE OF PRE-MASHTOTSIAN ARMENIA

*ARTAK MOVSISYAN*

Summary

The writing heritage of pre-Mashtotsian Armenia is divided into four large groups:

a) The created and used writing systems in the Armenian Highland:

- Pictographic script (V–III mill. BC),
- Linear script (III–I mill. BC),
- Hieroglyphic script of Van kingdom (Biainili, Urartu, Ararat, the 9th–6th cent. BC).

b) Loans of writing systems used by the inhabitants of the Armenian Highland:

- Hittite-Luvian hieroglyphic script (the 15th–8th cent. BC),
- Assyro-Babylonian cuneiform script (the 9th–8th cent. BC),
- Cuneiform script of the Van kingdom (Biainili, Urartu, Ararat, the 9th–6th cent. BC),
- Greek inscriptions of pre-Mashtotsian Armenia (the 3rd cent. BC – the 5th cent. AD),
- Aramaic inscriptions of pre-Mashtotsian Armenia (the 2nd cent. BC – the 2nd cent. AD)
- Syrian alphabetic script (the 4th cent. – the 5th cent. AD),
- Middle Persian (Pehlevi) alphabetic script (the 4th cent. – the 5th cent. AD).

c) Inscriptions found in Armenia in the result of relations with aliens.

d) Enigmatical inscriptions of unknown origin (used only in the Armenian Highland):

- The second cuneiform system of Armenia,
- Enigmatic Monumental Rock Signs.

In total, during three millenniums 5 local and 7 imported writing systems are represented in pre-Mashtotsian Armenia. The results of research spread light on the ancient history and culture of the Armenian Highland and on several other issues.